...թիւրեանը մեծ գործ մը կատարած կ'ըլլար, եթէ իր յուշերը յանրամատչելիութեամբ գրի առնէր եւ հրատարակէր «Հայրենիք» ամսագրի մէջ (ուր, թէեւ համառօտ կերպով, 1923ին տպուած էին)։

Արամի մասին խօսեցաւ ընկ. Հայկ Կասոյեանը, որ ոգեկոչեց Արամի եւ անոր հետ գործող ու անմոռաց նահատակ կամ մեռած ընկերներու յիշատակը։ Ներկայացուց Արամի կենսագրութիւնը, ...ակերպացուց անոր յեղափոխական հսկայ գործը Վասպուրականի մէջ մղուած օրհասական պայքարի վրայ եւ ներկան պայքարի Արամի աշխատանքները, որոնք կը հանդիսանան ...քարերը Հայաստանի Հանրապետութեան պատմութեան մէջ։

Հ. Յ. Դաշնակցութեան Ատրպատականի կազմակերպութեան կողմէ խօսեցաւ ընկ. Գասպար Յակոբեան, որ վերլուծման ենթարկեց Ռոստոմի եւ Արամի գործն ու դէմքերը։

Եղան նաեւ արտասանութիւններ, նուագ եւ մեներգներ։ Հանդէսին կազմակերպիչները ժողովուրդին վաճառեցին Ռոստոմի եւ Արամի նկարները։

Սգահանդէսը տեւեց ժամ ու կէս եւ ժողովուրդը հեռացաւ խոր տպաւորութեամբ,

ՄԱՍԻՍ

## ՏԻԿ. ԼԻՍԻ ՍԵՒՈՒՄԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Անցեալ շաբաթ երեկոյ, Թեհրանի ...ի սրահին մէջ տեղի ունեցաւ ծանօթ երգչուհի տիկ. Լիսի Սեւումեանի (այժմ ...) երգահանդէսը։ ...

Հանդէսը սկսաւ յայտագրի մը կարդացումով ... Այս երգահանդէսը ... կը կազմակերպուէր ...

Ներկայացուած երգերուն մէջ ... Թէեւ ... ամենայն ...

չինի։ Երեւի կ'ընախընտրէ սրտի երաժշտութիւնը։ Տիկինը երգեց նաեւ ֆրանսերէն, ռուսերէն եւ հայերէն։ Անմիջապէս ընկերախմբիր լեզուական առողանութիւնը ֆրանսերէնի մէջ՝ քիչ մը օտարոտի էր։ Նախընտրեցի իր ռուսական օրօրը եւ հայկական գեղջուկ երգերը։

Տիկ. Սեւումեանի ձայնը իր նրբութեամբ զօրաւոր է եւ մանաւանդ հաղորդական։ Գիտէ իր ալիքներով մթնոլորտը ջերմացնել։ Անոր ձայնին մէջ կայ մաքուր կիրքը Արեւելքի լոյսին։

Հայկականներուն մէջ խիստ ուշագրաւ էր Կոմիտասի «Արահօ» գութաներգը։ Այստեղ Տիկ. Սեւումեան նետած էր բոլոր ընկալեալ տարազները եւ ինք էր, հայուհի՛ն էր որ կ'երգէր իր արտերու պէս ընդարձակ «Արահօ»ները։ Կ'ըսեն թէ այդ երկարաձգումը իր կողմէ եղած է։ Մենք զայն շատ ազդու եւ պերճախօս գտանք։

Երգչուհին ստացաւ բուռն ծափերու հետ՝ պարտէզ մը ծաղիկ։

ՈՒՆԿՆԴԻՐ ՄԸ

## ԿԵԱՆՔԸ ԿԻՊՐՈՍԻ ՄԷՋ

ԿԻՊՐՈՍ — Ապրիլ 24ը տօնուեցաւ այստեղ, Նախաձեռնութեամբ Նիկոսիոյ Հայ Երիտասարդաց Ակումբին։ Բեմի ճակատը զարդարուած էր նահատակ մտաւորականներով եւ հայկական եռագոյնով։ Խուռն բազմութիւն մը եկած էր յարգելու մեր մէկ միլիոն ժողովուրդի յիշատակը։ Կը նախագահէր Սարաճեան եպիսկոպոսը ... Ապրիլ 24ի նշանակութիւնը, գոյց տալով 1915ին մեր մեծ ողբերգութեան ամենասոսկալի պատկերները եւ տեսարանները։ ... հրաւիրեց նոր սերունդը, որ ... պատմութեան ... ծառայել։

** Մեր ակումբի սրահին մէջ ... ներկայացուեցաւ ... կը ... Ապրիլ ...։

Ցուցադրութիւնը ... ունեցաւ մեծ յաջողութիւն ... (Ապրիլեան) ... Միւս ... ներկայացուցին ..., ...։

Մ.

## ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄԱՏԸ

Պերլինի մէջ մայիս մէկի առթիւ, ռուսականութիւնը ձեռնարկած էր խիստ պարտականութիւններու։

Պրպտումներու ընթացքին ձեռք անցուած են երկու հատոր գրքեր, որոնք Մոսկուայէն զրկուած են Պերլինի համայնավարներուն եւ անհերքելի կերպով կը հաստատեն բռնաբարութիւնը ... Պերլինի խռովութիւններուն մէջ։

Անոր այդ հատագրութիւն բովանդակութիւնը։—

«Զաւակներ եւ արեւելք Պերլինի բանուորները պիտի անմահանան պատմութեան մէջ ... ընդդէմ ... Թէեւ ... Թիւր ... Ուղղ. գմ ... կերպով ... կազմակերպութեան կեդր. կոմիտէն իր ... պատասխանատուութեան ... »

Այս հատագիրը ... թերթը կը ... խորհրդ. Ռուսիոյ ... ։

Այս երկրորդ հատագրին ալ ... Մոսկուային կողմէ —

«Պերլինի մայիսեան ցոյցերը ... պիտի ... »

Ալ ... Պերլինի ... Ուղղ. գմ ... ։

## ՓՈՔՐ ԼՈՒՐ ՄԸ ԱՄԵՐԻԿԱՅԷՆ

Ն.-Եօրքի բանը, ամենէն կը պատմեն գեղեցիկներ։ Տիմ անցած է Ամերիկա, ուր ամէն որ փառաւոր կոչուած մէջ բրդած են ...

աշխարհի մէջ, առաջնութիւնը ամենափաղաքներուն եւ ... բոլոր ամենաբարձր ... (Էմփայր Սթէյթ)

Ըլլալով Ամերիկայի մէջ, Նիւ Եօրքի կեդրոնի մէջ կառուցուած աշխարհի ամենէն բարձր շէնքը։ Անոր ... կը գրէին թէ 75 յարկ ... թէ պիտի կառուցուի. ... 68 յարկ ... 75 ... 246 մեթր բարձրութեամբ, ...

... պիտի ունենայ 3750 պատուհաններ, 11,000 բնակիչ եւ պիտի արժէ 15 միլիոն տոլար, ... 375 միլիոն ֆրանք։ ... 42րդ եւ 45րդ փողոցներու մէջ ...

... 16 յարկեր, ... 5550 մեթր։ ... 17 յարկեր ... 56 յարկեր ... 12 յարկեր

28 վերելակներ պիտի ... 150 ... 500 ... ։

## ԿՈՂՈՊՈՒԱԾ ԵՆ ԳՏՆՈՒԱԾ

Նիւ Եօրքի մէջ, եօթը քթէիկներու պաշտօն յանձնուած էր փնտռել ... 6 միլիոն արժէքով։

Հայտնի ... ։

Ոստիկանութիւնը արագ փնտռտուքով մը զայն ... ։

## ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### ԽԵՂՃ ԱՆԱՏՕԼՈՒԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ

ՄԱՐՍԷՅԼ.— Բէյրութցիներու ... Պէյրութ ... Անատօլուի ... Հայաստան ... (Ամերիկա) ...

... Բէյրութցիներու ...

Մեր խօսքը ... Անատօլուի ...

Գ. Նանեան

Կարդացէք և Տարածեցէք
ՅԱՌԱՋԸ

## ԵԹԷ ԿԸ ՀԱՅԻՔ...

Մտերմանք նաև մեր կարգ մը պաշտօնակիցներուն յիշեցնել տարրական պարտաճանութիւն մը.— ՅԻՇԵԼ ԱՂԲԻՒՐԸ, ԵՐԲ ՈՐ ԵՒ Է Մ ԱՍՆԱԻՈՐ ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ ՆԱՄԱԿ ԼՈՒՐ Կ'ԱՐՏԱՏԵՆ «ՅԱՌԱՋ»ԷՆ։

### ՍՈՒՐԻԱԲՆԱԿ 8000 ՍԱՍՈՒՆՑԻՆԵՐՈՒ ԲՈՂՈՔԸ ՈՒՂՂՈՒԱԾ Ա. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԴԷՄ

ԽՄԲ.— Հետեւեալ նամակը ստացանք Սուրիոյ Սասունցիներու Կեդր. Վարչութենէն (Հալէպ), հրատարակութեան խնդրանքով.—

ՀԱԼԷՊ.— Լրագիրներէն գուշակեցինք, որ ժամանակէ մը ի վեր Հայաստան ապաստանած Սասունցիներէն 50 ընտանիք ... աքսոր ... տեղափոխութիւն ...

... Սասունցիներէն ...

Ուստի բոլոր ... ։

Արդ. յանուն ... Սասունցիները ... ։

(Կ'ըլլայ)

### ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ ՄԸ

1931ին, Փարիզի մէջ տեղի պիտի ունենայ գաղթային ցուցահանդէս մը համագաղութային։ Այս առթիւ կազմուած է յանձնախումբ մը, որուն պաշտօնն է ...

## «ՅԱՌԱՋ»Ի ՊԱՏՄՈՒԱԾՔՆԵՐԸ

# ՎԱՐԴԵՆԻՆ

Վարդենին չէր գիտեր թէ ո՞ր էր ծնած կամ ո՞ր անցուցած էր զուլութեան առաջին օրերը,— ծաղիկները գիտեն թէ ... ։

Երբ, առաջին անգամ ըլլալով ... ։

Վարդենին քով, ... ։

Վարդենին ... ։

— Դուն խնամեցիր զիս. ... ։

...

Մարգը գլուխ օրօրեց։

— Մտադրութիւնդ բարի է, ...

— Ես քայլիդ չէ՛մ, պատասխանեց վարդենին։ ...

— Այն կնոջ որ հոն կը բնակի։

— Այդպէս չի կրնար ըլլալ, ...

— Ան քեզ զնած է։

— Այդ ատելու ... ։

Մարգը քիչ մը մտաւ ...

— Ո՛վ սիրելի վարդենի, ...

— Ուրկէ՞ ...

— Ան մեծ գործատեալ մը ...

— Կը սխալիս որ ...

— Մէջինեններուն ...

— Իրա՞ւ...

— Այո՛։

Մարգը վերադարձաւ իր ...

— Այո՛, պատասխանեց, ...

— Իսկ հարուստ մարդիկ ...

— Այո՛, գոռաց հովը։

Եւ յանկարծ, ... ։

— Հ...

Մենամօրէն խնդաց ու պարտէզին բոլոր ... ։

— Հարուստները, ...

... Ի՞նչ կ'ուզես որ ... ։

— Իսկ ... ։

Հովը վեր առաւ ... ։

— Իրաւ ալ ծաղիկներ, ... ։

ՀԵՐՄԻՆԻԱ Ց. ՄԻՒՀԼԷՆ

(1)

# "ՄԱՅԻՍ 28,,Ի ՀԱՆԴԷՍՆԵՐԸ

## ՓԱՐԻԶ

*Նախաձեռնութեամբ Հ. Հ. ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ*
*եւ Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ*

Այսօր կիրակի իրիկուն ժամը 8.30էն մինչեւ կէս գիշեր «փըթի ժուռնալ»ի սրահը 21 Rue Cadet, մէթրօ՝ Cadet

*կը նախագահէ՝ Ա. ԽԱՏԻՍԵԱՆ*
*կը խօսի՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ*

## 50 ՀՈԳԻՆՈՑ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԸ

*կը նուագէ հայերէն եւ ֆրանսերէն կտորներ։*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝* Օր. Աւնադամեան (*երգ*), Օր. Ջառափեան (*դաշնակ*), Օր. Մառի Մակազեան (*երգ եւ ասմունք*), Պ. Պ. Մարութեան (*արտասանութիւն*), Ս. Նաւասարդեան (*երգ*), *Ռուսական Ժողովրդական Օփէրայի ղեկավար* Ն. Ղուկասեան (*երգ*)։

*Ֆրանսայի Հայ Սկաուտները եւ Պուա Քոլոմպի Հ. Մ. Ը. Մ.ի մասնաճիւղին արիները կը հսկեն կարգապահութեան։*

Մ ո ւ տ ք ը ա զ ա տ է

## ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊ

*Այսօր կիր. ժամը 2.30ին* Salle de Municipalité, Rue des Halles

*կը նախագահէ՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ*
*կը խօսի՝ Շ. ՄԱԿԱՐԵԱՆ*

գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ *Օր. Ճամպազ (դաշնակ)*, Mlle Cécile Vigouroux (*ջութակ*), *Հայկական պարեր եւն.։*

Մ ո ւ տ ք ը ա զ ա տ է

---

## ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*8 Յունիս Շաբաթ իրիկուն*, 12 Rue du Renard, Paris (IV)

*Կազմակերպուած Պ. ԱՐՇԱԿ ՓԷՇՏԻՄԱԼՃԵԱՆԻ կողմէ*

*Նուագախումբ եւ ճազ-պանտ։ Արեւելեան նուագախումբ (Մկրտիչ, Նասիպ, Բարունակ, Յովսէփ եւ Արթաքի), Նասրա հանըմ, (արեւելեան պարեր)։ Ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով։*

*Կը խնդրուի սեղանները նախապէս վարձել։ Տոմսերու համար այժմէն դիմել ճաշարան* «ANI» *67* Rue Monsieur le Prince, Paris *(6)*։

*Մ Ո Ւ Տ Ք 10 Ֆ Ր Ա Ն Ք*

---

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Ղեկավարութեամբ՝ Մ. Մ Ա Ր Ո Ւ Թ Ե Ա Ն Ի*

*1 Յունիս Շաբաթ իրիկուն ժամը 8,30ին* Sociétés Savantes*ի մէջ*

*կը ներկայացուի՝* **"ԽԱՒԱՐԻ ՄԷՋԷՆ,,** *հեղ. Մարութեանի*

*ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՄՕՏ ՕՐԷՆ*

---

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

*2 ՅՈՒՆԻՍ ԿԻՐԱԿԻ ԿԷՍՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ԻՆ ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊ*

Salle de la Municipalité*ի սրահին մէջ*, Rue des Halles

*Նուագ, երգ, ժննախօսութիւն, հայկական եւ սկաուտական պարեր, բոլորն ալ սկաուտներու կողմէ։*

*կը մասնակցի* Scout de France*ի նուագախումբը։*

*Մ Ո Ւ Տ Ք 2 Ֆ Ր Ա Ն Ք*

---

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲԸ

*2 ՅՈՒՆԻՍ ԿԻՐԱԿԻ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ ՃԻՇԴ 8.45ԻՆ*

ALBERT 1er *ԹԱՏՐՈՆԸ 64* RUE DU ROCHER

*Սիրայօժար մասնակցութեամբ՝* Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ

*(Այս եղանակին մէջ վերջին անգամ ըլլալով)*

*կը ներկայացնէ՝* **Տ Ր Ի Լ Բ Ի**

*Մասնակցութեամբ Պ.Պ. Թօլայեանի, Լաքքայի, Տ. Նշանեանի, Սվաճեանի, Սարեանի, Գմբէթեանի, Սարիմ, Փափազեան եւ Տիկ. Ալիքսանեանի, Օր. Անահիտի։*

*Ա. եւ Ե. արարներուն կը մասնակցի յայտնի դաշնակահար Պ. Սատուեց իր խումբով։*

*ԳԻՆԵՐԸ՝ Օթեակ 200—250, Թիկնաթոռներ 10էն մինչեւ 40 ֆր.*

Տոմսերը կը ծախուին Պ. Յ. Առաքելեանի մօտ *(4* Rue Darcet*)* ինչպէս նաեւ «կավռօշ»ի խմբագրատունը *(*208bis Rue Lafayette*)*։

---

### ՕՐ. ԳԵՂԱՆՈՒՇ ԵՐԱՆԵԱՆ

ԵՒ

### Պ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԹԱԳԻՈՐԵԱՆ

Ն Շ Ա Ն Ո Ւ Ա Ծ

*Պուա Քոլոնպ Իսի-լէ-Մուլինօ*

*19 Մայիս* 1929

### ԹԷՈԴԻԿԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Թէոդիկի մտերիմները, ողբացեալ գրողին մահուան տարեդարձին առթիւ դէպի գերեզման գնացք մը կազմակերպած ըլլալով, կը հրաւիրեն համգուցեալին բարեկամներն ու համակիրները ներկայ ըլլալ այսօր ժամը 2,30ին, Métro Jean Jaurèsի առջեւ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Հայր եւ որդի Պօզիկեան իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն Մարսէյլի Արաբկիրի Հայր. Միութեան, Ա. Ե. Հ. Կ. Խաչի, Հ. Յ. Դ. Պատանի Միութեան եւ ամէն անոնց որոնք անձամբ, նամակով եւ հեռագրով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ ՏԻԿ. ՆՈՒԱՐԴ ՊՕԶԻԿԵԱՆԻ տխուր մահուան առթիւ։

### ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

*96* r. Rivoli, *մէթ. Շաթլէ։ Արմատ. եւ նոր մեթոտով դարմանում արանց եւ կանանց մորթի, արիւնի եւ վեներ. հիւանդութեանց (ֆրանկախտ, ջերմամբիզ.) եւ վարիսի։ Մասն. Լայօռաթուար։ Խղճամիտ եւ արագ խորհրդակցութ. ամէն օր 9—12, 2—8, Կիրակի 9—12։*

---

### ՏՕՔԹ. Ա. ՊՕՂՈՍԵԱՆ

36, Rue de Bellefond, 36
PARIS *(9e)*
մէթրօ՝ Poissonnière
Tél. Trudaine 88-77

### *«ԵՐԿՈՒՆՔ»* Օրկան Զ. Ե. Ռ. Միութեան

Լոյս տեսաւ Բ. Թիւը, պատկերազարդ եւ ճոխ բովանդակութեամբ։ Յօդուածներ ունին Մ. Նաթանեան, Վ. Թէքէեան, Շ. Նարդունի, Յ. Պուռնազեան, Ասկանազ, Հ. Խանէտանեան։ Իսկական պատմութիւնը Ապրիլեան սգանանդէսի միջադէպին։

Ֆրանսա՝ տարեկան 22 ֆր, Արտասահման՝ 1,5 տոլար։ Դիմել M. Kurkdjian, 247 Boulevard Voltaire, Paris։

### *Կ'ուզուին* *երիտասարդ գործաւորուհիներ*

*կեղծ մարգրիտներու արհեստանոցի մէջ աշխատելու համար։ Լաւ ամսավճար։ Դիմել՝ Օր. Զաքարեանի, 93* Rue Pelleport, *Մէթրօ՝* Pelleport.

### *Կ'ուզուի* *վարպետ խոհարար մը արեւելեան կերակուրներու համար։ Դիմել՝ ճաշարան* «Ani», *62* Mr. le Prince, *Փարիզ։*

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

---

անսպառ հարստութիւն բերող հանք մը, որուն մասին Իրաքի կառավարութիւնը կրնայ սակարկել. կ'աւելցնէ թէ շատ դիւրաւ կարելի է դրամ գտնել՝ երկաթուղիի գիծը մինչեւ Մուսուլ երկարելու եւ Պաղտատի մէջ Տիգրիսի վրայ երկաթուղիի կամուրջ մը շինելու համար:

## Յունաստան դրամ կը վճարէ Պուլկարիոյ

Հելլէն կառավարութիւնը շաբաթ օր 200,000 անգլիական ոսկի վճարեց Պուլկարիոյ՝ հելլէնեւպուլկար խառն յանձնաժողովին նախագահ գնդապետ Քորֆէի միջոցաւ: Այս գումարը առաջին մասնավճարն է մակեդոնացի Պուլկարներու գոյքերուն համար եղած հատուցումին, ինչպէս որոշած էր յիշեալ յանձնախումբը: Նոյնպէս՝ ասիկա առաջին քայլն է՝ դէպի Քաֆանտարիս - Մոլոֆ համաձայնագրին գործադրութիւնը:

Դիւանագիտական շրջանակները կը յուսան թէ, կ'ըսէ «Թայմզ»ի Աթէնքի թղթակիցը, Յունաստանի ուղղամտութեան այս նոր ապացոյցը պիտի ունենայ կարեւոր արդիւնքներ, օրինակ՝ վստահութիւնը պիտի վերահաստատէ Պուլկարիոյ դրժգոհ Մակեդոնացիներուն մէջ, որոնք իրենց գոյքերը լքած էին Նոր Յունաստանի մէջ: Նոյնպէս պիտի դիւրացնէ խառն յանձնախումբին գործերը. ասիկա ցոյց կուտայ նաեւ Վէնիզէլոսի փափաքը Պուլկարիոյ հետ լաւագոյն հասկացողութեան մը գալու մասին: Այս կարգադրութեան մէջ կարեւոր դեր խաղացած է խառն յանձնախումբի հելլէն նոր պատուիրակ Էքսինտարիսը:

## Մուսուլի քարիւղները կը բաժնուին

Ուաշինկթընէն կը հեռագրեն թէ՝ Մուսուլի քարիւղներուն մասին Միացեալ Նահանգներու, Անգլիոյ եւ Իրաքի միջեւ եռակողմանի համաձայնութիւն մը կնքելու մասին կատարուած բանակցութիւնները վերջացած են:

Այս համաձայնութիւնը, որ կը կարծուի թէ մօտ օրէն պիտի ստորագրուի Լոնտոնի մէջ, կը ճանչնայ Իրաքի գերիշխանութիւնը եւ կը պաշտպանէ ամերիկեան շահերը:

Ամերիկեան քարիւղի հինգ ընկերութիւններ կը գործակցին անգլիական, ֆրանսական եւ հոլանտական ընկերութեանց հետ, Իրաքի քարիւղները շահագործելու համար:

## Շիրազի ապստամբութիւնը

«Թայմզ»ի թղթակիցը Թեհրանէն կը հեռագրէ թէ Շիրազի մօտ Քաշկայ ցեղախումբի ապստամբութիւնը դեռ կը շարունակուի:

## Բոլշեւիկ հիւպատոսներ ձերբակալուած

Խարպինէն կը հեռագրեն թէ աւելի քան հարիւր չինացի ոստիկաններ խուզարկեցին խորհրդային հիւպատոսարանը, ուր Գ. Միջազգայինի անդամները գաղտնի ժողով կը գումարէին: Հիւպատոսարանի պաշտօնէութիւնը մեծ քանակութեամբ վաւերաթուղթեր այրել փորձած ատեն կրակ տուաւ շէնքին, ուր փութացին հրշէջները:

Խուզարկութեան ընթացքին ոստիկանութիւնը ձերբակալեց բոլոր ներկաները, որոնց մէջ էին Խարպինի ռուս ընդհ. հիւպատոսը, Մուքտէնի խորհրդային հիւպատոսը եւ երեք ռուս կիներ: Գրաւեց նաեւ մեծ քանակութեամբ վաւերաթղթեր: Ոստիկանութիւնը զեկոյցի մը մէջ կ'ըսէ թէ գտած է նաեւ զէնք եւ ափիոն:

Թոքիոյէն հեռագիր մը կ'ըսէ թէ խուզարկութեան գլխաւոր նպատակն էր գտնել վաւերաթուղթեր հաստատող թէ զօր. Ֆէնկ Եու Հսիանկի շարժումներուն կը մասնակցին նաեւ բոլշեւիկները: Զօր. Ֆէնկ Նանքինի կառավարութեան կողմէ ապստամբ հռչակուած է եւ կ'ամբաստանուի իբրեւ մեղսակից բոլշեւիկներու:

«Էքսչէյնճ Թէլէկրաֆ» կը հաղորդէ որ Ֆէնկ 25,000 զինուոր ունի Հիւսիսի եւ 100,000 Հարաւի մէջ՝ ազգայնական ուժերուն դիմաց: Ներկայիս մեծ ճակատամարտ մը կը մղուի: Հանքէուէն ազգայնական ուժեր հասան Քանթոն:

Շանկայի մէջ կազմուեցաւ նոր քաղաքական կուսակցութիւն մը, որուն անունն է «Փրկենք Քուոմինթանկը»:

## Քատրիէ հանըմի խնդիրը

Քատրիէ հանըմի եւ ընկերներուն հարցաքննութեան տեղեկագիրը յանձնուած է Պոլսոյ ընդհ. դատախազութեան: Ըստ այս տեղեկագրին՝

1. Ահմէտ Վէֆիք կապ ունի լրտեսական կազմակերպութեան մը հետ: Զինադադարին Մուսթաֆայի եւ Թուֆանի սրճարանին մէջ (Աղաճամի) շատ աշխատած է միլլի ուժերուն դէմ: 2. Նասըր պէյ ամէն գործի մէջ համախորհուրդ շարժած է Ահմէտ Վէֆիքի հետ: Ասոնք սերտ կապ ունին նաեւ քանի մը ընդդիմադիրներու հետ: 3. Քատրիէ հանըմ իր «պրաւնինկ» ատրճանակով նշանառութեան փորձեր կատարած է Փաշա Պաղչէի կողմերը: Յետոյ, ինք եւ ընկերները մտերմութիւն հաստատած են Եւրոպայէն վտարուած բոլոր արկածախնդիր օտարականներուն հետ: Էնկիւրի երթալէն օր մը առաջ, Քատրիէ հանըմ ափարթըմանի մը մէջ տեսնուած է լրտեսի մը հետ:

## Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷՆ

ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի Ռոստոմ, Քրիստափոր, Իշխան, Ջաւարեան, Ակնունի, Վռամեան եւ Արմէն Գարօ եւ բոլոր խումբերու եւ ենթակոմիտէներու ընկերները եւ ընկերուհիները, այս շաբաթ իրիկուն ժամը 7ին, 4 Rue St Jaque (Սալոն «Սէն Ժաքի» սրահին մէջ: Օրակարգ.— Զեկուցում պատգամաւորներու: Ներկայ կրնան գտնուիլ միմիայն վերջին եռամսեայի յաջորդաբար ժողովներէ չբացակայողները եւ 1929ի անդամատետր ներկայացնողները:

## "ՄԱՅԻՍ 28„Ի ՀԱՆԴԷՍՆԵՐԸ

ՄԱՐՍԷՅԼ

Այս Կիրակի ժամը 2.30ին Կարտըն Փարքի մէջ: Մանրամասնութիւնները առանձին:

կը խօսի՝ Ա. ԽԱՏԻՍԵԱՆ

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԴՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲԸ

2 ՅՈՒՆԻՍ ԿԻՐԱԿԻ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ ՃԻՇԴ 8.45ԻՆ

ALBERT Ier ԹԱՏՐՈՆԸ 64 RUE DU ROCHER

Սիրայօժար մասնակցութեամբ՝ Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ

(Այս եղանակին մէջ վերջին անգամ ըլլալով)

կը ներկայացնէ՝ ՏՐԻԼԲԻ

Մասնակցութեամբ Պ.Պ. Թօլայեանի, Լաքքայի, Տ. Նշանեանի, Սվաճեանի, Սարեանի, Գմբէթեանի, Արմանի, Փափազեանի, Տիկ. Ալիքսանեանի եւ Օր. Անահիտի:

Ա. եւ Ե. արարներուն կը մասնակցի յայտնի դաշնակահար Պ. Սատունց իր խումբով:

ԳԻՆԵՐԸ՝ Օթեակ 200—250, թիկնաթոռներ 10էն մինչեւ 40 ֆր.

Տոմսերը կը ծախուին Պ. Յ. Առաքելեանի մօտ (4 Rue Darcet) ինչպէս նաեւ «Կավռօշ»ի խմբագրատունը (208bis Rue Lafayette):

## Հ. Յ. Դ.

Մարսէյլի Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. անդամական ժողովը՝ այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, ծանօթ հաւաքատեղին: Կը հրաւիրուին Գէորգ Չաւուշ, Արմէն-Գարօ, Քեռի, Քրիս եւ Զարդարեան խումբերը:

Լիոնի Կուկունեան խումբի ժողովը՝ վաղը իրիկուն ժամը 8.30ին Քաֆէ տը լա Գոմէթի ներքնասենեակը, 122 Cours Lafayette: Կարեւոր օրակարգ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԱՆԱՍԱՐԵԱՆԻ ԴԱՍԸՆԹԱՑԲԸ այսօր Հինգշաբթի կէսօրէ վերջ ժամը 3.30էն 5՝ Հայերէն եւ Հայոց պատմութիւն (Պ. Մ. Նաթանեան):

ՓԱՐԻԶԻ Հ. Մ. Ը. Մ.ի բոլոր հին եւ նոր ֆութպոլիստները կը հրաւիրուին խորհրդակցական ժողովի, այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Ֆլորիա ճաշարանը:

Հ. Մ. Ը. Մ.ի Շրջ. վարչութիւն




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS Paris

208bis, Rue Lafayette

Le Gérant: E. SOUVIGNY

